Մատենաշար «ՅՈՒՍԱԲԵՐ», Թիւ 7

Գ. ՆԺԴԵՀ

# ԷՋԵՐ ԻՄ ՕՐԱԳՐԷՆ

---

«Ժողովո՛ւրդ, ասա՛ ինձ
քո իդէալն եւ ես ասեմ
քո ապագան»։

ՄՈՆԴԷՆ

---

Կ Ա Հ Ի Ր Է

Մատենաշար «ՅՈՒՍԱԲԵՐ», Թիւ 7

Գ. ՆԺԴԵՀ

# ԷՋԵՐ ԻՄ ՕՐԱԳՐԷՆ

«Ժողովո՛ւրդ, ասա՛ ինձ
քո իդէալն եւ ես ասեմ
քո ապագան»։

ՄՈՆԴԷՆ

ԳԱՀԻՐԷ
ՏՊԱՐԱՆ «ՅՈՒՍԱԲԵՐ»
1924

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

Ես ճշմարտութիւններ գիտեմ, որոնցից մէկն ասում է՝ ուզո՞ւմ ես գուշակել, տեսնել մի ժողովուրդի ապագան՝ նայի՛ր նրա երիտասարդութեան։

Նայելով քեզ, հա՛յ երիտասարդութիւն, վարդագոյն յուսատեսութեամբ չեմ լցւում ես։

Երէկ դու աւելի յուսատու էիր քան այսօր։ Իսկ մեր վաղը, մեր ապագան կախուած է մեր ներկայից։

Վաղը ազգովին պիտի հնձենք այն, ինչ որ սերմանում ենք այսօր.—այսօր, երբ դու նուազ խոստմնալից ես, երբ քո մէջ, շնորհիւ մեր օրերի նիւթապաշտական ոգու եւ համատարած յուսալքութեան, թուլացել է պաշտամունքը երկու աստուածութիւնների՝ հայրենի ժողովուրդի եւ երկրի, քո շարքերում, գիտես այդ, օրեցօր աճում է յոգնածների, ուղեկորոյսների եւ դարպլնքաց եղածների թիւը։

Քո մի մասի մտքի ու սրտի սնունդը—արա՞ղ—չէ կազմում «առիւծոսկրի ուղնուծուծը»,

Տկարանալով բարոյապէս, դու մեր մէջ թուլացնում ես մեր ժողովուրդի լաւագոյն ապագայի յոյսը։

Ահա թէ ինչո՛ւ ուզեցի մտերմաբար մի քիչ խօսել քեզ հետ, ուզեցի օրագրիս մի քանի անարուեստ էջերով—ծնունդը իմ խորհրդածութիւնների—ստիպել քե՛զ եւս մտածելու մեր վաղուայ մասին։

ԳԱՐ. ՆԺԴԵՀ

---

# ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆՆԵՐ

## I

## ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԵԱՆ ՕՐԷՆՔԸ

«Մի զինւոր սպանում է Արխիմեդին»։

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Ժողովուրդների պատմութիւնն այլ բան չէ քան իրենց գոյամարտի, իրենց յաղթութեանց և պարտութիւնների պատմութիւնը։

Պատերազմներն են օրօրել մարդկութեան մանկութիւնը և ո՛չ խաղաղութիւնը, որը բընական վիճակը չէ եղել, այլ պատերազմների կարճատեւ դադար միայն։

Աշխարհը կառավարում է հակամարտութեան օրէնքը։ «Մի զինւոր սպանում է Արխիմեդին»։

Յաղթում է ուժեղը և ո՛չ արդարը։

Վա՜յ թոյլերին։

—

Բոլոր ժողովուրդները՝ լուսաւորեալ թէ վայրենի՝ ձգտում են արևի տակ յարմար եւ կայուն մի տեղ գրաւել։

Նրանք զէնքի են դիմում երբեմն ռազմասիրութիւնից, երբեմն մրցակցութիւնից, երբեմն կոյր ատելութիւնից մղուած։

Պատերազմում են, երբ պէտք է նորանոր շուկաներ ձեռք բերել, ծովերի տէր դառնալ, երբ պէտք է ինքնապաշտպանուել կամ ապահովել այս կամ այն երկրի անկախութիւնը։

Քիչ անգամ նրանց իրար դէմ չեն հանում նաև ամենաանբնական և չնչին պատճառները, օրինակ իրենց միապետների դինաստիական շահերը, նրանց հիւանդոտ փառասիրութիւնը, կրօնների և բարութեան մասին ունեցած ըմբռնումների տարբերութիւնը ևլն.։

Պատերազմի համար են աշխատում եւրոպական իմպերիալիզմը, անգլիական ծովատիրութիւնը, ամերիկեան դոլարապաշտութիւնը, համիսլամականութիւնը, դեղին վըտանգը, պանսլաւիզմը ևլն.։

Պատերազմ է անվերջ, և եթէ երբեմն ժողովուրդները կռուադաշտերում չեն, ապա նըրանք զօրանոցներում են, ուր խելայեղօրէն պատրաստւում են նորանոր բախումների համար։

—

Չէզոքութեան են դիմում թոյլերը միայն, յաճախ բաժանելով պարտուածների հակառա-

գիրը։ Ինչպէս չկան չէզոքներ։ Եթէ երկուսն այսօր բարեկամ են—նշանակում է թէ նրանք զինակցել են մի երրորդի դէմ։

Ամէն մի պատերազմ երկու նորերի պատճառ է դառնում, որովհետև չափւած կողմերից ոչ ոք է իրեն վերջնականապէս պարտւած կամ յաղթական համարում։

Եւ միշտ էլ պարտւած կողմը դեռ իր նահանջի ճանապարհին մշակում է իր փոխվրէժի ծրագիրը։

—

Մէկը յարձակում է, միւսը պաշտպանւում. այդ երկուսից ո՞րն է մեղաւոր։

— Եւ ոչ մէկը, իրաւունք ունեն երկուսն էլ, պատերազմն արդար է երկուսի համար էլ՝ ասում է ֆրանսացին։

Ես սիրում եմ թղթախաղում տանողին, ինչպէս և կռւում յաղթողին՝ ասում է անգլիացին։

Եթէ մեզ համար օգտակար է, ուրեմն եւ կարելի է ասում է՝ գերմանացին։

Կամ բոլորի բարեկամը, կամ բոլորի թշնամին՝ ասում է ամերիկացին։ Եւ որովհետև հնարաւոր չէ բոլորի բարեկամը լինել, նա գործնականում մնում է բոլորի թշնամին։

—

Պատերազմի դէմ մարգարէական խանդով ու զայրոյթով խօսել են մարդկութեան ամե-

նաընտիր ներկայացուցիչները, բայց և այնպէս նա չարունակում է պահել իր գոյութիւնը, հեգնելով իմաստասէրների ճշմարիտ խօսքը, սրանց ոսկի երազը։

«Գազանների խնձոյք», «ազգամիջեան սպանդ», «խելագար իրերակերութիւն», «մարդկութիւնը կրծող սև վէրք», «օրինականացած կողոպուտ» ևլն. — ահա՛ պատերազմը իր թշնամիների համար։

«Չէ, ասել է անմահ Հիւգօն, կեանքը չի կարող աշխատել մահուան համար։ Սպանութիւնը մնում է սպանութիւն, միևնոյն է թէ ի՞նչ ես կրում՝ ոճրագործի գլխարկ թէ՞ ֆըրանսիական կայսեր թագը»։

«Չէ՛, չէ՛, նրանք բնաւ կիսաստուածներ չեն. նրանք մարդ էլ չեն», — աշխարհակալների մասին ասել է Ֆենելոնը։

«Լուսաւոր ազգերը նման են որսկան շների։ Մի անբարոյական բնազդ գրգռում է նրանց ոչնչացնելու իրար, առանց օգուտի և իմաստի». — ասում է Անատոլ Ֆրանսը։

«Նա — ասել է Լակտենցին — որն սպանել է միայն մէկին, դատապարտուած է որպէս յանցագործ։ Բայց մորթեցէք հազար հոգի, արիւնով հեղեղէք երկիրը, դիակներով վարակէք գետերը և ձեզ տեղ կը տան Ոլիմպի վըրայ...»

—

Պատերազմն ունեցել է և ունի իր պաշտպանները, որոնց համար այդ մշտական չարիքը իր բնախօսական և բարոյական արդարացումն ունի։

— «Առանց պատերազմների աշխարհը կը վերածւի մի նիւթապաշտական ճահիճի»,— ասում են սրանք։

— «Պատերազմը—դա լաւերի յաղթանակն է»։

— «Առանց պատերազմների աշխարհը կ՛ընկնի մի վտանգաւոր լեթարգիայի մէջ»։

— «Անբարոյականանում են անմարտունակ ազգերը» ևլն.։

Սրանք ժխտում են պատերազմների պատահական բնոյթը, համարելով վերջինը որոշ ճակատագրական օրէնքների ծնունդ, որպէս մարդկային բարեշրջման բուռն և խոշոր արտայայտութիւններից մէկը։

—

Քսան երկար ու ձիգ դարեր են անցել Գողգոթայից մինչև մեր օրերը և—աւա՜ղ—խաղաղութեան, եղբայրութեան ու սիրոյ ուսուցչի աստուածաշունչ խօսքը շարունակում է մնալ որպէս «ձայն բարբառոյ յանապատի»։

Երկու հակամարտ ուժերի արնոտ պայքարն է դեռ լցնում ազգերի պատմութիւնը —սրի և սիրոյ խօսքի պայքարը—երկու ուժեր, որոնցից մէկը երազում է վերացնել

սահմանները երկրների և ժողովուրդների միջից, իսկ միւսը յամառում է հաստատ պահել այդ սահմանները, ասել է և ազգամիջեան թշնամանքը՝ իր գոյութիւնը յաւերժացնելու համար։ Եւ դեռ իշխում է վերջինը, դեռ ուժեղ ու յաղթական է վերջինը և յոյս չկայ թէ մեր դարում սուրը կը վերածուի արօրի։

«Խաղաղութի՛ւն ես ուզում՝ պատրաստուիր կռուի»—այս է մնում օրւայ հրամայականը։

Եւ՝ կարծէք խաբուսիկ խաղաղութիւնից սարսափած՝ բոլորը, բոլորը պատրաստւում են, զինւում։

Եւ ոչ ոք է ապահով, որ վաղը աշխարհի վրայով վերստին չի անցնի պատերազմի գունատ ձիւաղը արնոտ սուրը ձեռքին։

---

II

## ՄԵՐ ԱԶԳԱՅԻՆ ՎՏԱՆԳՈՒՄԸ

«Թուլութիւնն ստեղծուած
է սնուցանելու ուժը»։

Պի՛տ ապրի և հայ ժողովուրդը։ Պիտ ապրի, որովհետև այդպէս է ուզում ինքը։

Բայց ի՞նչպէս, ինչի՞ շնորհիւ, ի՛նչ տըւեալներով, գրաւակա՞նը։

Չգիտեմ, մեր ժողովուրդը գիտակցո՞ւմ է թէ երբեք իր գլխովին կորչելու վտանգն այնքան մեծ չի եղել, ինչպէս այսօր։

Գիտակցո՞ւմ է թէ անցեալում իր վիճակը, իր ֆիզիքական գոյութեան ապահովութեան տեսակէտից աւելի նուազ մտահոգիչ է եղել, քան այսօր։

Մինչև իր ազատագրական ընդվզումները օտար լծերի տակ, մի տեղ որպէս պարզ ըստրուկ, մի այլտեղ՝ հաւատարիմ հպատակ և ամեն տեղ իր քրտինքով տիրող տարրը կերակրող—նա հանդուրժելի էր ելնող ժողո-

վուրգների կողմից։ Սակայն այսօր նա այն չէ, ինչ որ էր երկու երեք տասնեակ տարի առաջ։ Նրա հոգեբանութեան հետ փոխուել է և իր վիճակը։

Թրքահայկական նահանգներն այժմ անհայաբնակ են, ինչպէս մեծ գերեզմաններ։ Արարատեան դաշտի մի մասն է այժմ հայի հայրենիքը, ընկած մահմեդական երկրների ճանապարհի վրայ,— մի կամուրջ արեւմուտքի և արեւելքի մահմեդականութեան համար։

Այժմ Նրա աշխարհագրական դիրքը աւելի մտահոգիչ է, քան իր քաղաքական ճակատագիրը։

—

Հանրածանօթ իրողութիւն է, որ ռուսական տիրապետութիւնից ազատուելու ցանկութեամբ թաթար Ադրբէջանն երազել է և պիտի երազի մի օր տաճիկներին տեսնելու Անդրկովկասում։

Ծանօթ իրողութիւն է և այն, որ Տաճկաստանը փորձել է և պիտի փորձի մի օր Ադրբէյջանի և Դաղստանի իսլամութիւնը, ինչպէս և Անդրկովկասի բնական ամրութիւնները դարձնելու պատնէշ Ռուսաստանի դէմ։

Ասել է՝ մեզ, մեր ժողովրդին վիճակուած է մի օր կենաց ու մահու կռիւ մղելու համիսլամ երկրների՝ մեր վրայով իրար միանալու ձգտման դէմ։

Դժուարի՛ն պայքար։

—

Բացէք քարտէզը և ձեր տեսողութիւնը սեւեռէք այն փոքրիկ տարածութեան վրայ, որը կազմում է այսօրւայ Հայաստանը, Արարատեան դաշտի մի մասը և Սիւնեաց երկիրը։

Աչքի անցկացրէք այն գիծը, որը նրա արդի սահմաններն է կազմում։ Տաճիկները Իգտիրում՝ Էջմիածնի պատերի տակ։ Թաթարը Շարուրում՝ Երևանի պատերի տակ։ Նոյնը Նախիջևան-Օրդուբադում՝ դարանամուտ Սիւնիքի թիկունքում. Արևելքից էլ Ադրբէյջանը. Տեսնո՞ւմ էք, դա այլ բան չէ, քան մի երկաթէ օղակ հայ երկրի շուրջը։

—

Կայ՝ մեր երկրի և ժողովրդի ինքնապաշտպանութիւնը դժուարացնող և մի այլ պարագայ.

Դիմէք քարտէզին, նա կը պարզի ձեզ եւ այդ դժբախտ պարագան. Վտանգի դէպքում թշնամին ժամերի ընթացքում կը բաժանէ Ալէքսանդրապոլը Երևանից, իսկ վերջինը՝ Սիւնիքից. Քարտէզը ցոյց կը տայ ձեզ և հետևեալը, — մահմեդականութեան Արաքսի ափով Ադրբէյջանին միանալու համար հարկաւոր է 2—3 ժամ։

Նոյնը մի այլ գծով՝ Սիսեանի վրայով, կարող է միանալ Ադրբէյջանին գրեթէ նոյնքան ժամանակի ընթացքում. Նոյնը ժամերի ընթացքում կարող է անել և Ղափանի վը-

րայով։ Սեղմ ասած արեւելքի և արեւմուտքի մահմեդականութիւնը ժամերի ընթացքում առնուազն եօթը տեղով կարող է զատել իրարից հայկական գաւառակները և միանալ, ի հարկէ, հայ ժողովրդի վրայով.

—

Եթէ Հայաստանի աշխարհագրական դըժբախտ դիրքի և նրա փոքրիկ ծաւալի հետ հաշւի առնէք նաև մեր ժողովրդի քանակը, նրա հատուածականութիւնը, նրա քաղաքական իդէալը, նրա և իր իսլամ փոխյարաբերութեանց առանձնայատկութիւնը՝ ձեզ համար իր բովանդակ սպառնալիութեամբ կը պարզուի մեր ժողովրդի վտանգուած ապագան.

Ծանօթ վիճակի մէջ հայ ժողովուրդը իր արդի հոգեկան կառուցուածքով կարող է իր գոյութիւնը հրաշքով պահել։ Այդ դրութեան մէջ վտանգուած է նրա ապագան։ Բայց և այնպէս նա ուզում է ապրել որպէս ազգ և պի՛տ ապրի։

Բայց ի՞նչպէս, ի՞նչ տուեալներով։ Չկորչելու համար, մեր դարը և մեր աշխարհագրական դիրքն ու ծանօթ դժբախտ պայմանները, որոնց մէջ ապրում է մեր ժողովուրդը, պահանջում են լինել ուժեղ, էլի՛ ուժեղ և մի՛շտ ուժեղ։

Ապրե՞լ ենք ուզում՝ լինե՛նք ուժեղ ազգովին։

Լինենք ուժեղ, ուժեղ ազգովին, — անհրամայականը։

Լինենք ուժեղ այնքան, որ մեր անպարտելիութիւնը առ ոչինչ դարձնէ մեզ ծանօթ այն բոլոր դժբախտ պայմանները, որոնք դժուարացնում են մեր ցեղի ինքնապաշտպանութեան գործը։

Թւական, տեխնիկ, ընդհանրապէս նիւթական տեսակէտից մեր ժողովուրդը, հասկանալի պատճառներով, երբեք չի կարող ուժեղ լինել իր հարևաններից։ Սակայն ուժը՝ միայն նիւթական ազդակները չեն, այլ և մի ժողովրդի առաքինութիւնները։

Կայ հոգեբանական գերադասութիւնը, կայ բարոյական ուժը—աշխարհի պէս հին, բայց միշտ էլ թարմ և հրաշագործ, որին տիրապետող ազգը քիչ անգամ է գլուխ ծռել իրենից նիւթապէս տասնապատիկ ուժեղ թշնամու առաջ։

Բարոյական ուժն է գոտեպնդում փոքր ժողովուրդներին ու բանակներին անհաւասար կռւում. Նա է դէպի յաջողութիւն ու յաղթանակ առաջնորդում Թւապէս թոյլերին՝ մեծամեծ հակառակորդների դէմ։ Նա եղել է և է այսօր միակ ապաւէնը մեզ նման փոքր ժողովուրդների։

Եւ այսօր մեր դրութեան մէջ միայն նա

—բարոյական ուժը, կարող է ապրեցնել մեզ։ Ուրեմն, ճանաչենք նա որպէս մի ընդհանուր Աստուածութիւն, լինենք ուժեղ—արևի տակ մեր տեղն ու գոյութեան իրաւունքը պահելու համար։

—

## III

## ՀԱՅՐԵՆԱՊԱՇՏՈՒԹԻՒՆԸ

«Ո՛չ․ ախոռը, ուր անասունները կ՚ուտեն եւ կը պառկեն՝ հայրենիք չէ»։

ԼԱՄԸՆԷ

*Հայրենասիրութի՛ւն — մարդկային առաքինութիւնների թագն ու պսակն է դա։ Մարդկային բարոյական յատկութիւնները իր մէջ միացնող այդ գերագոյն առաքինութիւնն է ազգերի գոյութեան անհրաժեշտ պայմանը եւ անսպառ աղբիւրը նրանց ուժի և մեծութեան։ Նա այնքան է ջերմ մի ժողովուրդի մէջ, որքան փոքր է այդ ժողովուրդը և որքան ամբարիշտ են նրա հարեւանները։ Եթէ այդպէս չէ ամենուրեք, այդպէս պիտի լինի։*

—

*Այդ նուիրական զգացումը զարգանում է աստիճանաբար։*

*Սկզբում բնազդական, զարգանալով նա դառնում է իմացական՝ ոգիանում է նա։*





Առաջին դէպքում անհատը թելադրւում է, մղւում մի ինստինկտիւ զգացումից. երկրորդ դէպքում՝ նա գիտակցօրէն կատարում է մի պարտականութիւն։

Նա զարգանում է ժողովուրդների ինքնագիտակցութեան և արժանապատւութեան զգացումի հետ, ընկնում՝ նրանց նիւթակրօնութեան, չքաւորութեան, սեղմ ասած՝ նրանց բարքերի ապականութեան հետ,— մեծապէս արագացնելով նրանց անկումը։

Հայրենիքներն ապրում են հայրենասիրութեամբ, ընկնում՝ նրա պակասի շնորհիւ։

—

Մեր ժողովուրդն առանց հայրենասիրութեան այն է, ինչ որ մի մարմին առանց հոգու։

Դա մայրն է — իր նման փրկարար — մի շարք առաքինութիւնների՝ գաղափարականութեան, անձնուիրութեան, արիութեան։

Դա պատերազմողի բարոյական ամրութիւնն է, կախարդական զրահը, անվրէպ զէնքը։

Հայրենասիրութեամբ հարուստ ժողովուրդը դէպքերի խաղալիքը չէ, այլ նրանց հրամայողը։

Այդպիսին սովորական «նաւաբեկութիւններ»-ի ժամանակ չէ գլխաթափւում բարոյա-

պէտ։ Վստահ իր բարոյական ուժերին, նա շատ շուտ է ուղղում իր մէջքը՝ վերագրաւում իր նախկին դիրքերը, դրութիւնը։

Հայրենասիրութեան հետ բարձրանում են ազգերը, ընկնում նրա հետ։

Փոքր ազգերը պարտաւորէն աւելի հայրենասէր պիտի լինեն, քան մեծերը, մենք աւելի՝ քան բոլորը։

Հայրենապաշտ պիտի լինենք մենք։

—

## IV

## ՎՏԱՆԳԱՒՈՐ ՄՈԼՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ

> «Հակաճառութիւնները ճըշմարտութեան համար այն են, ինչ որ ստուերը պատկերների համար»։

*Ոչի՛նչ է ունեցել աշխարհը, որ իր որոշ թշնամիները չունենար։*

*Անստուեր, անբիծ, անթերի միաժամանակ բոլորի կողմից չի համարուել և ո՛չ մի սկըզբունք, ո՛չ մի սրբութիւն, ո՛չ մի արժէք։*

*Քննադատելի են համարուել աստուածներն ու աստուածութիւններն անգամ։ Նոյն ճակատագիրն է ունեցել և հայրենասիրութիւնը։ Եւ լաւ է, որ այդպէս է աշխարհը, այլապէս իրենց բովանդակ արժէքով երեւան չպիտի գային շատ բաներ, որոնցով կ՚արժէքաւորւի, կ՚իմաստնանայ, կը վեհանայ կեանքը։*

—

*Տգիտութիւն, էգօիզմ և աշխարհաքաղաքացիութիւն—ահա երեքը հայրենասիրութեան անհաշտ թշնամիներից։*

Առաջինի մասին չպիտի խօսեմ։
Կոյրը մեղաւոր չէ, որ չի տեսնում։
Մտաւոր կուրութիւն է տգիտութիւնը։

Զզուելի է էգօիստը։ Նա թշնամի է իր նը-մաններին, իր հասարակութեան, մարդկու-թեան։ Նա ստանում է առանց տալու։ Նա ա-նիշխանական է, որովհետև իրաւունքներ ու-նի առանց պարտականութիւնների։ Նա գող է, տզրուկ, որովհետև ապրում է ուրիշների հաշուին։ Իր յանցաւոր եսի մէջ փակւած, ինչ-պէս խխունջն իր պատեանի մէջ, նա արհա-մարհում է և հեգնում այն ամենը, ինչ որ հենց այժմ անձնապէս իրեն չէ շահեցնում, չէ պարարտացնում։

Ուր չահ, ուր լաւ,—այնտեղ հայրենիք։
Սա է նրա շնական նշանաբանը։

Այլ պիտ լինէր աշխարհը, եթէ գոյութիւն չունենար այդ մարդատիպ հրէշ՝ էգօիստը։ Դա՛ է առաջին դասալիքը, դա է վախկոտը, փոքրո-գին ու խաբեբան։ Դա է բարձրացնում անձ-նական կաշւի արժէքը, դա է պսակազրկում սրբութիւնները, իդէալները, հայրենիքը։

Դա յաճախ փորձում է իր հոգու այլան-դակութիւնները քօղարկել այս կամ այն մօ-լոր տեսութեամբ, այս կամ այն ուռուցիկ և գեղեցիկ խօսքով։ Բայց, ի զո՛ւր աշխատանք, նրա կեանքը, նրա բարոյական վարքագիծը

գալիս է մատնելու հրէշը մարդու պատկերով ։ Եթէ մի երկրի ղեկն ու ղեկավարութիւնն ունենայի ձեռքիս, ես բոլոր էգօիստներին, տանուագը, կը զրկէի այդ երկրի հողից ու ջրից օգտուելու իրաւունքից ։ Որքան շատ են սրանք մի ժողովրդի մէջ, այնքան անապահով է նրա ապագան ։ Չկա՛յ, մի հասարակութեան համար չկայ աւելի մեծ չարիք՝ քան սրանց տխուր գոյութիւնը ։ Սրանց մասին է Շարլ Վագները ասել՝ «մա՛րդ, դու աւելի քիչ արժես քան այն շունը, որը նետւում է դէպի գողը, առանց վախենալու նրա հարուածներից» ։

—

Հայրենիքի և հայրենասիրութեան թշնամին աշխարհաքաղաքացին է՝ կոսմոպոլիտը ։

Սրա հայրենիքը, իր յայտարարութեամբ, համայն աշխարհն է, ազգը՝ համայն մարդկութիւնը ։

Չկան ազգեր՝ կայ մարդկութիւնը, ասում է այդ միամիտ երազատեսը և հայեացքըն ուղղում դէպ անորոշ հեռուները ։

Պիտ սիրել—ասում է սա . պիտ սիրել բոլոր մարդկանց առանց ցեղի, կրօնի, գոյնի, կուլտուրայի խտրութեան ։ Այո՛, պիտ սիրել, պիտ կարեկցել, աւելին՝ պիտ օգնութեան փութալ իր նմաններին ։ Սէրը դէպ մեր նըմանները եղել է և կը մնայ կրօնների և յեղափոխութիւնների հռչակած առաքինութիւն-

ներից գերագոյնը։ Պի՛տ ապրի մարդասիրու-
թիւնը։ Բայց մի՞թէ մեր դէպ մարդկութիւնն
ունեցած սէրը ազատում է մեզ և մե՛ր ժողո-
վուրդը սիրելուց, հայրենասէր լինելուց։

Մերը չպիտի՞ սիրել, որովհետև պէտք է
սիրել և օտարի՞նը։ Մի մասը չպիտի՞ սիրել,
որովհետև սիրում ենք ամբողջութի՞ւնը։ Ան-
հեթեթութիւն չէ՞ դա։ Իսկ եթէ բոլորն էլ՝ ի
դժբախտութիւն աշխարհի, իրենց աշխարհա-
քաղաքացի յայտարարէին, այսինքն դադա-
րէին իրենց ազգը սիրելուց, իրենց ազգային
պարտականութիւնները կատարելուց—կը չո-
հէ՞ր մարդկութիւնը։ Եւ ինչո՞ւ միայն մե՛ր
ազգը չսիրել, ինչո՞ւ միայն մերինի՛ն չօգնել,
չէ՞ որ դա էլ մի մասն է կազմում մարդկային
ցեղի։ Անհեթեթ վարդապետութիւն, որը պլ-
ատոնական սէր քարոզելով դէպ մարդկու-
թիւնը, քար անտարբերութիւն է յանձնարա-
րում դէպ մարդկութիւնը կազմող ազգերը։
Չէ՛, լրջօրէն կաղում է այդ մոլար վարդա-
պետութիւնը,—Նրան պակասում է տրամաբա-
նութիւնը և էտիկան։

Հեռո՛ւ մեզնից այդ մոլորութիւնը,

—.

Բացարձակապէս հաշտելի են հայրենա-
սիրութիւնն ու մարդասիրութիւնը։ Բարե-
կամներ են սրանք և ոչ թշնամիներ։ Եւ մի-
այն ազգասէ՛րը կարող է սիրել և՛ մարդկու-

թիւնը։ Աշխարհաքաղաքացին իրապէս սիրում է — եթէ սիրում է — ոչ այս, ոչ այն, այլ մի մեծ քիմերա, մի ոչնչութիւն։ Ծառայելով իր ազգին, հայրենասէրը անուղղակի կերպով ծառայում է և մարդկութեան։ Նոյնը չի կարելի ասել աշխարհաքաղաքացու մասին։ Մարդկութիւնն իրենից չի ներկայացնում մի կազմակերպուած միութիւն, ինչպիսին է ազգը, որպէսզի նրա նկատմամբ կարողանանք որոշել մեր անելիքը, մեր պարտականութիւնները։ Մեզնից որոշ և կոնկրետ զոհողութիւններ պահանջում է ազգը, որը և մեզ բարոյապէս կապում է մարդկութեան հետ, յարաբերութեան դնում նրա հետ։

Սեղմ ասած՝ աշխարհաքաղաքացին իրապէս ոչ ոքի հանդէպ իրեն պարտական չի համարում։ Ահա՛ թէ ինչո՞ւ իրականում նա մօտենում է աւելի էգօիստին քան այլասէրին։ Իսկ եթէ էգօիստ չէ, ապա ցնորապաշտ է, որի սէրը դէպ մարդկութիւնը պլատոնական է, անարժէք։

—

Աշխարհաքաղաքացիների մի մասը միամիտ ցնորապաշտներ են, զուրկ իրականութեան զգացումից, միւս մասը՝ պարտականութեանց փախչող դասալիքներ, որոնք զանազան սոփեստութիւններով քօղարկում են իրենց դաւաճանութիւնը մարդկային առաջի-

նութիւններից ամենագերագոյնին—հայրենասիրութեան հանդէպ։ Սրանց աշխարհաքաղաքացիութիւնը այլ բան չէ, բայց եթէ բացասումն բոլոր տեսակի պարտականութեանց։

«Օգտակար անդամը ազգերի դաշնակցութեան մէջ նա է, որն ամենաուժեղ կերպով է թափանցուած ազգայնականութեան գաղափարներով»—ասում է Ռուզվելթը։

«Հակահայրենասիրութեան թէօրիան—ասում է եւրոպացի մի գրող—միշտ էլ հանդիսանում է որպէս մարդկային ստորնութեան թէօրիան»։

—

## V

## ՄԵՐ ՄԱՄՈՒԼԸ

> Թերթեր ունենք, որոնք աւելի օգտակար պիտի լինէին հայ ժողովրդին, եթէ բնաւ լոյս չտեսնէին։

Ժողովուրդը դաստիարակելու գործում մեծագոյն դերը մամուլինն է։ Սակայն, շատ չնչին դեր է կատարում այն մամուլը, որը հանդիսանում է իր ժողովրդի մտա-բարոյական հայելին միայն և ուրիշ ոչինչ։ Քիչ արժէք ունեն այն թերթերը, որոնք հասարակութեան հրամցնում են՝ նրա սեփական մտա-բարոյական կեանքի պատկերը միայն։ Առօրեայ անհամ անցքերի ու դէպքերի նկարագրութիւնը հրապարակախօսութիւն չէ։ Խօսքի լուսանկարչութիւն չպիտի լինի մամուլը։ Մերը, որոշ բացառութեամբ, շարունակում է մնալ այդպիսին։ Նա շարունակում է մասնագիտանալ ժխտական քննադատութեան մէջ, արձագանքը հանդիսանալով կամ

մեր առօրեայ իղձազուրկ կեանքի, կամ կողմնապահ պաշտպանը իր նեղ կուսակցական տեսակէտների և շահերի։

—

Թերթեր ունենք, որոնք աւելի օգտակար պիտի լինէին հայ ժողովրդին, եթէ բնաւ լոյս չտեսնէին։

Թերթեր ունենք, որոնց, ինչպէս եղինջին, չի կարելի ձեռք տալ առանց խայթուելու։ Մաղձ, յիմարական ծաղր, շուկայիկ յիշոցներ, քաշքշուկ, սևացում, զրախօսութիւն— ահա՛ մեր «խայթող» թերթերի հրապարակախօսութիւնը։ Երբ պակասում են լուրջ ապացոյցներ, սրանք «մաքրասիրաբար» դիմում են իրենց այլանդակ փաստաբերութեան, լցնելով իրենց էջերը ոճական նման մարգարիտներով —«սրիկայ», «առաւ-փախաւ», «քառանկիւն գլուխ», «բարոյական ոչնչութիւն», «խայտառակութեան դրօշ» և լն.։ Այդ թերթերի բովանդակութեան չափ և աւելի զզուելի է և իրենց բազարի լեզուն։ Սրանց համար գոյութիւն չունի հրապարակախօսական էտիկան։ Սրանց համար չէ գրի և գրչի մաքրութիւնը։ Զգիտեմ, այդ թերթերի խմբագիրները գիտե՞ն թէ խօսքը—դա մարդու բարոյական շունչն է, թէ ինչ որ մտքերն են՝ այն էլ խօսքերը, և որ խօսքը մատնում է մեր ներքին մարդը։

—

Միշտ էլ երբ ձեռքս եմ առնում որոշ թերթեր, ակամայից յիշում եմ «Թերթերի իրար ոչնչացումը» խորհրդանշող մի կարիկատուրա՝ «օձերի կռիւը» խորագրութեամբ։

Ոչնչացնելով իրանց շուրջը եղածներին, միացած երկու օձերը ուտում են իրար և կռուադաշտում մնում է ... երկու պոչ միայն ...

—

Ժողովրդի հաւաքական սիրտը, նրա ինքնագիտակցութիւնը մշակելու փոխարէն, նրա մի մասը թշնամացնել միւսի հետ, նրա մի մասի անունից հայհոյել միւսին, յարձակուել միւսի վրայ—դա առնւազն հրէշութիւն է, դա ասել է հեշտացնել մեր գիշատիչ հարեւանների գործը, դա ասել է նորանոր աղէտների համար նախապատրաստել հայրենի ժողովուրդը։

Դա ազգովին ինքնաոչնչացում է, անձնասպանութիւն։

Թողնե՛նք փոքրիկ եսերի և փառասիրութիւնների ամօթալի ու վտանգաւոր կռիւը՝ կռուադաշտում մի օր «երկու պոչ» չթողնելու համար։

—

«Օրինակը, թող որ համր, ամենակարող ուսուցիչներից մէկն է աշխարհի»։

Քիչ խօսք՝ շատ օրինակ՝ ժողովրդասիրութեան, պարտաճանաչութեան, անձնուիրութեան։ Առանց վեհ և հրահանգիչ օրինակների չկայ դաստիարակութիւն։

Թո՛ղ գիտակցեն այդ հայ մամուլը վարողները և մեծապէս օգտուեն անցեալի բարոյա-իդէական հարստութիւնից։ Թող յաճախ նրանք բնոյթագրեն հայ ժողովրդի ընտիր որդիներին, որոնք իրենց կեանքով թէ մահով մի բան աւելացրել են ազգ կոչուելու մեր իրաւունքին։ Թող նրանք յաճախ պատմեն իրենց ընթերցողներին, թէ ինչպէս սիրեց իր հայրենիքն Ա—ն, թէ ինչպէս ծառայեց իր ժողովրդին Բ—ն. թէ ինչպէս ընկաւ իր ժողովրդին համար Գ—ն ևլն.։ Թող գիտակցեն հետեւալը.

— «Մարդկութիւնը հոգեպէս աճում է, մեծանում է դէպի վեհն ու հազուագիւտն ունեցած իր հիացումի շնորհիւ միայն»։ *)

Թո՛ղ մեր ցեղի հերոսականով ու մարտիրոսագրութեամբ յաճախ հիացմունքի ժամեր տան իրենց ընթերցողներին։

Թող մտքով իրենց ընթերցողին յաճախ տեղափոխեն երկիր, թող այցի տանեն նրան պատմական այն բոլոր վայրերին, որոնց հետ

*) Նիցշէ։

կապուած է հայ ժողովրդի հմայքն ու փառքը։ Թող ուխտի տանեն նրան այն նուիրական գերեզմաններին՝ մեր մեծ մեռելների հողաթըմբերին, որոնք աւելի դաստիարակիչ են քան մեր այսօրուայ դպրոցը, բեմը, եկեղեցին։

«Մեծ սիրտ և ազնիւ զգացումներ»—ահա թէ ինչը ուժեղ կը դարձնի մեր ժողովուրդը և ահա՛ թէ ինչ պիտի տայ մեր ժողովուրդին հայ մամուլը։

Կարո՞ղ են այդ անել մեր թերթերը—յուսալի է մեր ապագան։

Չե՞ն կարող—թող դադարեն թուղթ սեւացնելուց։

Աւելի պիտ հիանալ այն խմբագիրների լռութեամբ, որոնք չեն ուզում միայն աղմուկ և «փոշի» բարձրացնել։

—

## VI

## ԿՈՒՍԱԿՑԱՄՈԼՈՒԹԻՒՆ

Կուսակցամոլը — դա թշնամին
է իր ժողովրդի, բարեկամը՝
իր ժողովրդի թշնամիների։

*Չկայ աւելի մեծ չարիք, աւելի մեծ աղէտ ժողովուրդի համար — մասնաւորապէս մեզ նման փոքրիկ ժողովրդի համար — քան կոյր կուսակցամոլութիւնը։ Այդ տարամերժ ոգիի համար չկան բացարձակ ճշմարտութիւններ, նրա համար չկայ հասարակական շահ, պետական մօրալ։ Նրա համար օտար է այն ամէնը, ինչ որ իր կուսակցութեան կնիքը չի կրում։ Ինչ որ իր կուսակցութեան ծնունդը չէ — անընդունելի է և անհանդուրժելի։ Ծափահարելի է միայն այն, ինչ որ բղխում է իր կուսակցութիւնից։ Կուսակցականօրէն կոյր այդ դժբախտ արարածի համար երկու անգամ երկու հաւասար է ամէն ինչի, միայն ոչ չորսի։*

*Նմանը և՛ տեսնում է և՛ չի տեսնում, ե՛ւ հասկանում է և՛ չի հասկանում։*

Սեւամորթին աւելի հեշտ է ճերմակցնել, քան սրան ընդունել տալ ամենապարզ ճշմարտութիւնը, օրինակ՝ համոզել թէ ամբողջութիւնը մեծ է, շատ է իր մի մասից։

Կուսակցամոլութեան չար ոգին աստիճանաբար մթագնում է սրանց բանականութիւնը, կլանում խիղճը և վերջ ի վերջոյ, իսպառ սպանելով այդ դժբախտի բարոյական կարողութիւնները, դարձնում է սրան բարոյական ապուշ։

Քաղաքական ստախօսութիւն, հայհոյանք, կեղծիք, բանսարկութիւն, դաւեր, — ահա՛ սրա «կուսակցաշէն գործունէութիւնը»։

Նա թունաւորիչն է ազգային կեանքի։ Նա թշնամանք, ատելութիւն, անհամբերողութիւն է սերմանում միևնոյն ժողովրդին պատկանող անհատների և խմբակցութիւնների միջև։

Նա ստեղծում է ներքին ճակատներ, ջլատում ժողովրդի ուժերը։ Նա հասարակութեան թշնամին է, բարեկամը իր ժողովրդի թշնամիների։ Դա անէծքն է մեր կեանքի։ Կուսակցամոլութեան թունալի ախտով բռնըւած ժողովրդի ներկան՝ տխուր է, ապագան՝ անյուսալի։

Այդ ախտով հիւանդ ժողովուրդը միշտ էլ ներքուստ պառակտուած է, միշտ էլ պատրաստ որս իր գիշատիչ հարևանների համար։

—

Կուսակցամոլություն, կուսակցական էգոիզմ, անհամբերողություն—այդ զզվելի ախտերը հետևանք են երկու բանի, առաջինը՝ հոգեկան աղքատ կուլտուրայի, երկրորդը՝ ազգային և հասարակական զգացումների տհասութեան.

Հոգեպէս անառողջ է կուսակցամոլը. Ամէն ինչ կուսակցութեանս համար—ահա՛ սրա հասարակական մօրալը.

«Պետությունը՝ դա ես եմ»,—ահա նրա պետական մօրալը.

Սրա կուսակցական «զարգացումը» տասացինք վերջ ի վերջոյ պսակւում է բարոյական ապշութեամբ, տխո՛ւր վախճան, որին դեռ ձգտում են հազարաւորները, որը, ի դժբախտություն հայ ժողովրդի, մեր որոշ կուսակցությունների կողմից դեռ համարւում է քաղաքական առաքինություն։

—

VII

## ՊԱՇՏԱՄՈՒՆՔԸ ՄԵԾ ՄԵՌԵԼՆԵՐԻ

«Յիշէ զանոնք, որ գերեզմանին մէջ ննջելով սուրն իրենց գլխուն ներքեւը դըրին։ Քաջաց բարձն է սուրը»։

Նահատակնե՜րը...

Այդ մեծ մեռելները ամէնէն քիչ իրենց և իրենց կուսակցութեանց կը պատկանին, ամբողջովին՝ իրենց ցեղին և պատմութեան։

Իրենց ընտրած ճանապարհի բերմամբ նրանք կ'աշխատեն ու կը զոհաբերեն այս կամ այն կուսակցութեան դրօշի տակ, նահատակուելով՝ նրանք, կ'ազգայնանան, կը դառնան սրբազան սեփականութիւնը ողջ ազգի։

Չկան կուսակցական նահատակներ ու հերոսներ, կայ և կը մնայ ազգային մարտիրոսագրութիւնը և հերոսականը։

Սակայն այդպէ՞ս է հասկացել մեր ժողովուրդը,—ո՛չ դժբախտաբար։

Հետևա՞նքը.—Մեր նկուն և ողբալի վիճակը։

Պատճա՞ռը.—Կոյր եւ բարբարոս կուսակցամոլութիւնը,—մի զարհուրելի ախտ, որ պիտ թուլանայ, որ ուժեղանանք ազգովին։

Այդ ուղղութեամբ պիտ աշխատեն դպրոցը, մամուլը և ինքը ժողովուրդը.

—

— Իր ընտիր մեռելների պաշտամունքը չունեցող ժողովուրդը՝ ապերախտ ու բարբարոս, անարժան է անկախ հայրենիքի, որը միշտ էլ նահատակների սրբազան աճիւնից կը բարձրանայ.

— Մի ժողովուրդ բարոյապէս այնքան է ուժեղ, որքան ջերմ է նրա պաշտամունքը դէպի իր մեծ մեռելները.

— Իր նահատակների, իր անմահների դէմ մեղանչող ժողովուրդը մեծապէս մեղանչում է իր ապագայի դէմ.

— Կրօնները այլ բան չեն, բայց եթէ պաշտամունք մեծ մեռելների։

Անկրօն է՝ դէպ իր նահատակներն անտարբեր ժողովուրդը, ասել է՝ և անհոգի, դատապարտուած բարոյական փտութեան։

— Մի ժողովրդի հզօրագոյն զինակիցները պատերազմի ժամանակ նախևառաջ իր մեծ մեռելներն են.

— Խեղճ է այն ժողովուրդն, որն իր պայքարի և խոյանքների ժամանակ չէ զգում, թէ իրեն աներեւութաբար զօրավիգում են իր մեծ մեռելները.

Չափւում են բանակները, ժողովուրդները, յաղթում մեռելները:

— Իր անմահներից չօգտուող, ասել է՝ սրանց պաշտամունքը չունեցող ժողովուրդի բովանդակ ուժը իր թեւի, իր բանակի մէջ է միայն.

Եօթնիցս վա՛յ նման ժողովուրդին՝ անփառունակ մահ ու մոռացում—ահա՛ նրա փայն ու բաժինը աշխարհից:

—

VIII

## ԴԱՍՏԻԱՐԱԿԻՉ ՏՕՆԵՐ

«Ամենափառաւորը տեսարաններից—դա ժողովն է մի ժողովրդի»։

*Իմ օտարազգի բարեկամներից մէկը մի օր հարցնում էր ինձ—«մի՞թէ հայերդ ազգային որեւէ տօն չունէք։ Հրեաների խանութները կարելի է յաճախ փակ տեսնել, իսկ հայերինը միշտ էլ բաց են»։*

*Նոյն զարմանքը կարող է յայտնել ե՛ւ յոյն ե՛ւ ռուման ե՛ւ եւրոպացի մտաւորականը։*

*Մեր ազգային տօները շարունակւում են մնալ մեր եկեղեցու սեփականութիւնը։*

*Հայ ժողովրդի նիւթականապէս ապահով եւ նիւթականացած մասը իրեն ազգայնօրէն եւ մարդկօրէն պարտական չի զգում յարգելու իր ազգային տօները։*

*Այդ նուիրական օրերին հանդիսատեղիներում կարելի է տեսնել մեր ժողովրդի խոնարհ տարրերին միայն, իսկ նիւթականացած*

բարեկեցիկը, հարուստը—չնչին բացառութիւնով—չի երևայ այդ օրերին։ Նա միջոցներ ունի, օտար երկնքի տակ ապրելու լայն հնարաւորութիւն ունի նա։

Նրան պէտք չէ հայրենասիրութիւնը։ Կա՞յ հայրենիք—լա՛ւ, չկա՞յ—ոչինչ, առանց նրան էլ կարելի է ապրել։

—

Իսկ հայ կապիտալիստնե՞րը. արժէ խօսել սրանց մասին։ Չէ՞ որ սրանք ազգ չունեն, հայրենիք չեն ճանաչում։ Չէ՞ որ սրանց սրբազան հայրենիքը չոհաչատ չուկան եւ մեծածախս հաճոյավայրերն են։ Սրանք դուրս են ապրում ազգերից ու մարդկութիւնից։ Պարտականութիւններ չունին սրանք. Մարդ չեն սրանք։

Ա՛հ, այդ «վատ սրտի և լաւ ստամոքսի» տէրերը,—իրենց նիւթական բաւականութիւնների համար միայն ապրող մարդատիպ անասուններ, որոնք օտարի համար աշխատող ազնիւ անասունի արժէքն իսկ չունեն։ Տմա՛րդ արարածներ, որոնց մասին ասել է մի գրող. «Ջա՛րկ կրծքին, դատարկ ձայն կը տայ»։

—

«Կայ մի կարգադրութիւն.—ասում է հռչակաւոր Ռոբեսպիէրը— որը պէտք է համարել որպէս էական մասը ընդհանուր դաստիա-

րակութեան ։ Խօսքս ժողովրդական տօների մասին է ։ Հաւաքէք մարդկանց և դուք նրանց կը դարձնէք աւելի բարի ։ Հաւաքուած մարդիկ պիտի աշխատին հաճոյանալ իրար, իսկ հաճոյանալ կարող են միայն գործերով, որոնք նրանց դարձնում են յարգանքի արժանի ։ Տուէք նրանց միութեան մի ուժեղ մղում—բարոյական, քաղաքական,—և սէր դէպի ազնիւ գործերը, բաւականութեան հետ, կը թափանցեն նրանց սրտերի մէջ... Ամենափառաւորը տեսարաններից դա ժողովն է մի մեծ ժողովրդի ։

Տօները անկասկած կը լինեն միաժամանակ և ամենահաճելի կապը եղբայրութեան և ամենաուժեղ միջոցը վերածնութեան ։

Ունեցէք ընդհանուր տօներ՝ հանրապետութեան համար ։

Ունեցէք մասնաւոր տօներ ամեն տեղի համար, որոնք պիտի վերականգնեն այն, ինչ որ եղծել են, կործանել անցքերը ։

Թող բոլորը ձգնեն արծարծել ազնիւ ըզգացումներ—հրապոյրն ու զարդ մարդկային կեանքի—ազատասիրական ոգևորութիւն, հայրենասիրութիւն» ...

—

# IX

## ԻՆՔՆԱՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ

Ինքնապաշտպանութիւն — դա միակն է արուեստներից, որի թերութիւնները գրչի, վրձինի, մուրճի փոխարէն սրբագրում է թշնամու արնոտ սուրը։

*Ինքն իրեն յարգող ժողովուրդը իր ինքնապաշտպանութեանն յոյսը դնում է նախ իր բազուկի, իր զէնքի վրայ։*

*Իր ուժերից զատ ամեն ինչի ապաւինող ժողովուրդն արժանի չէ անկախ հայրենիք ունենալու, ազատ ապրելու։*

*Ահա՛ թէ ինչու անկախութեան բարիքներից լիուլի օգտուելու իրաւունքը ձեռք բերելու համար, ժողովուրդները նախ հրամայողաբար ձեռք են բերում ինքնապաշտպանութեան բարդ արուեստը, որը պահանջում է լինել ուժեղ, էլի՛ ուժեղ և մի՛շտ ուժեղ։*

Եղի՛ր այնքան ուժեղ, խրատում է պատմութիւնը, որ թշնամիդ չյանդգնի յարձակւելու։

Զգացնել տուր թշնամիիդ, որ ամէն վայրկեան պատրաստ ես պատերազմելու և նա կը հրաժարւի զինու ուժով քեզ անհանգստացնելու մտքից—ահա՛ սկիզբն ու վախճանը քաղաքական իմաստութեան։

—

Ինքնապաշտպանութիւն,—դա միակն է արւեստներից, որի թերութիւնները գրչի, վրձինի, մուրճի փոխարէն սրբագրում է թշնամու արնոտ սուրը.

Ապահով չէ այն ժողովուրդը, որը կատարելապէս չի տիրապետում այդ արւեստին։

«Մի զինւոր սպանում է Արխիմէդին»։

Ոչինչ արժէ բազմարւեստ ժողովուրդը, եթէ նա անվարժ է, թոյլ է այդ արւեստի մէջ.

Տխուր ապացոյց ասածներիս—արևմտահայութեան մի մասի կրաւորական ոչնչացումը.

Մի ժողովրդի՝ անկախ կեանքի բարիքներից յարատևօրէն օգտւելու համար անհրաժեշտ է երկու բան,—առաջինը՝ ինքնայարգանք, երկրորդը՝ ռազմունակութիւն.

—

Մեր պատմութեան մէջ մի բան միշտ էլ ինձ ցաւով և ամօթով է լցրել. Դա մեր ժո-

ղովրդի մի մասի կրաւորական նահատակութիւնն է։ Հարիւր հազարաւորները հեզաբար առաջնորդւել են դէպի ձորերն ու ծովափերը՝ ոչնչացւելու։

Արգահատելի է կրաւորաբար նահատակւող ժողովուրդը։ Նա տուժում է և բարոյապէս։ Նա իր նկատմամբ առաջացնում է արգահատանք և ոչ յարգանք։ Նրա համար գուցէ և ցաւեն, բայց նրան չեն զինակցի։ Թոյլերը զինակից չեն ունենում։ Անբարեկամ են մնում այն ժողովուրդները, որոնց մէջ մեծ թիւ են կազմում անհայրենասէրները, անմարտունակները, անարիները, — տարրեր, որոնց վտանգի ժամանակ միշտ էլ վիճակւում է աճեցնելու կրաւորական զոհերի թիւը։

—

Մի ժողովրդի բարոյա-քաղաքական արժէքը մատնում է նրա ինքնապաշտպանութիւնը։

Նա այն է, ինչ որ են իր որդիները՝ կռւում, կռւապաշտում։ Նրա մարտիկները գիտե՞ն հեգնել մահը—նա ուժեղ է և արժանի յարգանքի։

Նա կարող է ժամանակաւորապէս պարտւել, տեղի տալ, բայց չի կորչի։ Նրա բարեկամութիւնը կը փնտռեն բոլորը, նրան կը զինակցեն բոլորը։

Անփառունա՞կ է նրա մարտիկների մահը — նա թոյլ է, յարգանք չներշնչող, անբարեկամ, անզինակից և յաճախ ողբերգօրէն մենակ։ Արիութիւնը՝ Կարլայլի անմահ արտայայտութեամբ՝ եղել է և շարունակում է մնալ որպէս «յաւիտենական պարտականութիւն»։ Այդ բարձր յատկութիւնն է փրկում ազգերը ֆիզիքական և բարոյական անկումից։ Արիութիւնը — դա այն արժէքն է, որով ժողովուրդները գնում են իրենց անկախութիւնը։ Ազատ և անկախ հայրենիք ունենալու, ազատ և անկախ ապրելու իրաւունքն է արիութիւնը։

—

Ամեն մի կռուից յետոյ պարզւում է հետեւալը — սպանուած այսքան, վիրաւոր այսքան, անյայտ կորած այսքան։

Անյայտ կորածները — դա վատասիրտ դասալիքներն են, թշնամու բարեկամները։ Տարբերութիւնը սրանց և կրաւորական զոհերի միջև այն է, որ սրանք մեռնում են միայն բարոյապէս։

Ողբալի է այն ժողովուրդը, որն իր ինքնապաշտպանութեան կռիւներում կրաւորաբար մեռածների — ֆիզիքապէս թէ բարոյապէս — մեծ թիւ է տալիս։

Խղճալի՛ է նման ժողովուրդը, որի մէջ

«անյայտ կորածները» վտանգի ժամանակ լեգէոն են կազմում։

Նման ժողովուրդի ամէն մի պարտութիւնը դառնում է նրա Վատերլօն, նրա վերջնական պարտութիւնը։

Դա կարող է մի օր անյայտանալ, կորչել, տալով իր տեղը զօրաւորին, ռազմունակին, արիին։

—

Եթէ քաջ ես, ժողովո՛ւրդ, քեզ հետ են անգամ քո երկրին դէմ պատերազմական գործողութիւններ սկսած թշնամիներդ, քեզ հետ է նրանց համակրանքը։ Ահա՛ ուժն ու արժէքը արիութեան, քաջութեան։ Եթէ քաջանուն ես, ժողովո՛ւրդ, քեզ հետ են շատերը, քեզ հետ են բոլորը։

«Մի օր մեզ պէտք կը գայ», —մտածում են քաջ ժողովրդի հարեւանները և խախտելով իրենց չէզոքութիւնը, նետւում են կռուադաշտ նրա համար և նրա հետ կողք-կողքի կռուելու թշնամու դէմ։

Չքանալու դատապարտւած անարի ժողովրդի հետ ոչ ոք է կապում իր ճակատագիրը։ Ոչ ոք թոյլերի անխուսափելի պարտութիւնը բաժանելու յիմարութիւնը ունի։ Ոչ ոք է իր զէնքի պատիւը վտանգի դնում մարդասիրաբար։

Ժողովուրդները և սրանց կառավարութիւնները մարդասէր չեն և չեն լինում։ Եւ ոչ ոք իրաւունք ունի պահանջելու սրանցից՝ մեռնելու մեռնողի հետ։

Ահա՛ թէ ինչու ժողովուրդներն անկախ ապրելու համար պարտադրօրէն նախ ցոյց են տալիս, որ իրենց մէջ երկաթ կայ, որ իրենց որդիները արիաբար մեռնել գիտեն, որ կրաւորական զոհերը՝ գերեզմանում, իսկ դասալիքները՝ իրենց երկրում տեղ չունեն։

Աշխարհը ճանապարհ է տալիս ուժեղներին, որոնց առաջ խոչերն ու խոչընդոտները վերածւում են մարմարինէ սանդուխների դէպ առաջ ու վերև, դէպ յուսալի ապագան։

Լինենք ուժեղ։

---

## X

## ՂԵԿԱՎԱՐՈՒԹԻՒՆ

Թագմավարի հաճճարը
բղխում է իր հոգու
վեհութիւնից։

*Ասել ենք, թէ ժողովուրդները իրենք են դարբինը իրենց ճակատագրի։ Աւելի ճիշտ պիտի լինէր, եթէ ասէինք — մի ժողովուրդի ճակատագրի դարբինը նրա մտաւորականութիւնն է։*

*Ցանձին իրենց ժողովուրդների իրապէս չափւում են — սկզբունքային թէ ռազմական բախումների ժամանակ — մտաւորականութիւնները, ժողովուրդների ղեկավար տարրերը։*

*Միեւնոյն ժողովուրդը, բանակը՝ նայած իր ղեկավարներին, կարող է և՛ հրաշագործութիւններ կատարել և՛ խայտառակօրէն ծունկի գալ հակառակորդի առաջ։*

*Ուզում եմ ասել, թէ մի բանակ, մի ժողովուրդ հոգեբանօրէն այն է միայն, ինչ որ նրա հաւաքական հոգու մէջ դրել են նրա ղե-*

կավարները,—դա այն է, ինչ որ իր ղեկավարներն են։

—

Ո՞վ է, սակայն, կատարեալ ղեկավարը։

Ո՛չ, անշուշտ, բոլոր սպաները, բոլոր «մեծերը», որոնք բանակի հետ շարժւում են դէպի կռւադաշտ։

Շատերը սրանցից այլ բան չեն, քան մի զոյգ ուսադիր, մի աստիճան. մի տիտղոս։ Իսկական առաջնորդը շատ անգամ չէ նշանակւում, նա երեւան է գալիս, երբ նրա կարիքն է զգացւում, նա յայտնւում է վըտանգի ժամանակ։

Մէկը կարող է աստիճանով զօրավար լինել, բայց ոչ և առաջնորդ. Մի ուրիշը, կրելով պարզ հարիւրապետի ուսադիրները, կարող է կատարեալ առաջնորդ լինել։

Եթէ չեն ծնւում, ապա՛ դառնում են առաջնորդները։

—

Նա յաճախ սրտի և գործողութեան մարդ է քան մտքի։

Դա՛ հակառակ նրանց, որոնք յաճախ լուսագոյն բանակները վերածում են հօտերի, նա գիտէ հօտերը վերածել լաւ բանակների։

Նա՛ առիւծների խումբը ղեկավարելու նշանակուած ոչխարը չէ, այլ՝ ոչխարների հօտը կառավարող առիւծը։

Նրա համար զինուորը, մարդը այն չէ, որ տեսնում ենք, մարմինը չէ մարդ նրա համար, այլ այն, որ կարող է լինել, այն որ ընդունակ է լինելու մարդը, այն, ինչ որ ինքն է ուզում, որ լինի իր զինուորը, իր առաջնորդութեան յանձնուած մարդը։

Նրա համար երեք բարձր ճշմարտութիւններ ունի ժողովրդական ինքնապաշտպանութիւնը—հոգեբանականը՝ պէտք է լինել արի, բարոյականը՝ պէտք լինել անձնազոհ, քաղաքականը՝ պէտք է լինել ինքնայարգ։

Ահա՛ թէ ինչու կատարեալ առաջնորդը նա հոգեբանօրէն վերաստեղծում է իր բանակը, տալով նրան իր հոգին,

Դա՝ ասել է՝ միաժամանակ և դաստիարակ։

—

Եւ հոգեբան է նա։

Նա իր բանակի հոգիի մոգական բանալին ունի։ Նա գիտէ, որ հաւատ ներշնչել զինուորին, կը նշանակէ տասնապատկել նրա ուժերը։

Քիչ անգամ է նա դիմում զինուորների բանականութեան, բայց միշտ էլ սրտին։ Նա սիրտ է դնում իր ամեն մի խօսքի մէջ, ահա՛ թէ ինչո՛ւ եթէ կտրէք նրա խօսքերը՝ նրանցից արիւն կը կաթի։ Նա գիտէ, որ կռուի ժամանակ զինուորը աւելի բարոյական մենակու-

թիւնից է վախենում քան մահից, ահա թէ ինչո՛ւ նա երևում է ամէն տեղ, հասնում ամէնին, որպէսզի ոչ ոք—զինուոր թէ ղեկավար—իրեն մենակ չզգայ, որ անխաթար պահի գործերի ներքին բարոյական կապը, որ ամէն մէկին զգացնել տայ, թէ իր հետ է ամբողջ բանակը, ազգը, ցեղը և ինքը յաջողութեան Աստուածը։ Նա գիտէ եւ հետևեալը։

— Զինուորի համար կռուի ժամանակ դըրօշակը, ազգը, հայրենի երկիրը և սրա սըրբութիւնները խորհրդանշողը—դա իր առաջնորդն է, ահա թէ ինչո՛ւ կատարեալ առաջնորդը միշտ էլ իր զօրքերի հետ է, նրանց կողքին և նրանցից առաջ։

—

Թշնամիները—դեռ մարզադաշտում և զօրանոցում նա ներշնչում է իր զօրքին—թըշնամիները նման են շների, որքան որ վախեցար, այնքան կյարձակւին։

Այսքան արհամարհոտ է նրա խօսքը։

Ո՞վ ասեց որ միայն մենք, որ միայն մեր ազգն իրաւունք չունի ապրելու, յառա՛ջ, ցոյց տանք, որ ապրելու իրաւունք և արժանիք ունինք—այսպէս է նրա խօսքը կռւադաշտում։

Ամէն մի կռուի վրայ նա նայում է որպէս «դրօշամարտ»ի վրայ, որպէս դրօշի համար մղուող կռուի և լարում իր և իր բանակի բո-

վանդակ կարողութիւնները։

Ամէն մի արնոտ բաղխում նրա համար մի նոր քննութիւն է ուր իր ժողովուրդը մի աւելորդ անգամ ևս պիտ ապացուցի, թէ արևի տակ իր տեղն ունենալու իրաւունքն ունի։

—

Նա ասում է.

— Իր հողի վրայ պարտուելը կրկնակի եւ աններելի պարտութիւն է։ Իր երկրի սահմաններում պարտւող ժողովուրդն իրաւունք չունի խօսելու անկախ հայրենիքի մասին։

Իր հողի վրայ կռւող, ինքնապաշտպանող ժողովուրդի հետ են իր մեծ մեռելները, — մի ուժ, որի առաջ անզօր են բոլոր տեսակի ուժերը.

Նրա հետ է իր երկրի արեւը, որի առաջ թշնամին «ձիւնէ մեծութիւն է» միայն։

Նրա սիրտը լցնում է իր դաշտերի շունչը, իր լեռների սէգութիւնը։

Նրան օրհնում է հայրենի երկինքը։

Յաղթութի՛ւն — աղօթում են կանայք ու կոյսերը նրա համար։

Ցաղթութի՛ւն — երգում են մանուկները։

Ցաղթութի՛ւն — ղօղանջում են զանգերը։

Բոլորը և ամէն ինչ կանչում է, ասում «քեզ հետ ենք, յառա՛ջ»։ Ամէն ինչ եւ բոլորը կանչում և հրամցնում նրան՝ «յաղթի՛ր մեզ համար»։

Եւ յաղթում է նա։

Այսպէս, ե՛ւ գաղափարապաշտ է կատարեալ ղեկավարը։

—

Նա իր առաջնորդն ունի, որը, սակայն, ոչ աստիճանով իրենից բարձր զինուորականն է և ոչ ալ երկրի իշխանութիւնը։

Աներևոյթ է, բարոյական է նրան առաջնորդող ուժը։

Կառավարութիւն, բարձր հրամանատարութիւն, ձևական օրէնք—այդ բոլորը շատ քիչ բան կարող են տալ նրան։ Դիմադրութիւն—հնարաւորութեան սահմաններում յաղթութիւն—եթէ ձեզ տրուած են նիւթական գերադաս ուժեր։ Այսքան համեստ են ձևական իշխանութեան և օրէնքի պահանջները։

Կայ աւելին։

Կառավարութիւնը, բարձր իշխանութիւնը օրէնսդիրը կ'արդարացնեն ձեր պարտութիւնը, եթէ կարողացաք ձևականօրէն արդարացնել ձեր յանցաւոր քայլը։

Չէ որ միշտ էլ «երկու բերանով» կարելի է «ապացուցել», որ պարտութեան օրը հացը ժամանակին չհասաւ, թշնամին թւական գերազանցութիւն ունէր, մեր նահանջի ճանապարհը վտանգւելու վրայ էր ևլն.։

Եւ հասկանալի է դա։

կառավարութիւն, բարձր հրամանատարութիւն, դասաւորներ—սովորական մարդիկ են սրանք, որոնք վաղը միեւնոյն դրութեան մեջ կարող են ընկնել և իրենք․

Ահա՛ թէ ինչո՛ւ սրանցով և սրանց հրահանգներով առաջնորդւող ռազմավարը, եթէ գերադաս ուժեր չունի, կարող է երբեմն դիպուածով ժամանակի յաջողութիւն ունենալ, սակայն երբեք բախտ չի ունենայ հաղորդագրելու ռազմադաշտերից՝ «եկի, տեսի, յաղթեցի»:

Ահա՛ և թէ ինչո՛ւ իշխանական ղեկավարը երկրի ձևական իշխանութիւնից զատ միշտ էլ ունի նաև մի այլ իշխանութիւն—իր ժողովրդի մեծ մեռելների բարոյական իշխանութիւնը, որը հարիւրապատկելով նրա ուժերը, հարիւրապատիկ պահանջկոտ է և աններող:

—

Նրա համար միշտ էլ ճիշտ է հետևեալը․ մի բանակ, որն իրեն մէջ յաղթել է մահւան վախը՝ անպարտելի է և ամենակարող․

Նա գիտէ այդ ճշմարտութիւնը, ասել է, գիտէ և յաղթելու գաղտնիքը․

Թշնամուց աւելի վտանգաւոր է համարում իր բանակի շարքերում եղած վախկոտներին:

Վախը—դա միայն սրտի «յիմարութիւն», կամ «ջղերի խաղ» չէ․ Դա անինքնավստա-

հութիւնն է, անվստահութիւն դէպ իր և իր բանակի կարողութիւնները, դա հակառակորդի գերազանցութեան սպանիչ գիտակցութիւնըն է։

Ահա՛ թէ ինչո՛ւ վախկոտի համար միշտ էլ ուժեղ է թշնամին, անգամ այն ժամանակ, երբ իր դէմ կռւողը իրենից թոյլ է բոլոր տեսակէտներից։

Վախկոտներն են արիացնում, ուժեղացնում թշնամուն։ Սրանք են հեշտացնում թըշնամու գործը։ Սրանց երեսից են կորչում հայրենիքները։

Սրանք են իրական թշնամին։

Կռի՛ւ նախ սրանց դէմ։

Այսպէս է հասկանում նա բանակի հոգեբանութիւնը։

—

Նա գիտէ, որ չկայ զինւոր, անգամ ամենաանարին որն ընդունակ չլինէր կարող առաջնորդի ազդեցութեան տակ հերոսին վայել գործեր կատարելու։

Նա գիտէ, որ չկայ մարդ, որ ընդունակ չլինէր հոգեկան խոր յուզումների խանդավառութեան, ինքնամոռացութեան,—հոգեկան վիճակներ, երբ մարդու մէջ մեռնելու աստիճան թուլանում է կենդանական բնազդն ու վախը։

Եւ որովհետև համոզելու, ցնցելու, ներ-

չնչելու արւեստն ունի,—ահա՛, օրեր անց, նրա բանակը ծփում է վտանգն արհամարհող, մահն անգիտացող ռազմաշունչ տրամադրութեամբ։

Նա յաղթել է այլեւս, յաղթել իր բանակի անինքնավստահութիւնը, վախը։

Այժմ կարող է երեւալ թշնամին՝ նա պատրաստ է։

—

Նա ռազմարւեստագէտ է և ոչ զինւորական արհեստաւոր։

Նրա համար կռիւը արւեստագիտական ստեղծագործութիւն է և ոչ արհեստ։ Իր ռազմավարութիւնը նա մշակում է պատերազմի էութեան մասին ունեցած իր ըմբռնումի և իր երկրի տեղագրական պայմանների համաձայն։ Եւ ոչ մի «զմռսւած կանոն» և ոչ մի մեռեալ շաբլոն։ Վճռականութիւն և տարերայնութիւն—ահա՛ Նրա վարած կռիւը։ Գայլը խեղդել բնի մէջ—երբ յարձակւում է. Ուէ յամառ կէտի վրայ ուժաթափել թշնամուն և ապա անցնել յարձակողականի—ահա՛ Նրա պաշտպանողականը. Ոչինչ է անհանգստացնում Նրան իր երկրում։

Ցո՞ւրտ է, աւելի լաւ, թո՞յլ է թշնամին—յարձակւի՛ր. Անձրեւո՞ւմ է, աւելի լաւ, թոյլ է թշնամին—յառաջացի՛ր. Բո՞ւք է,

մառախո՛ւղ,—ուրախացի՛ր, որպէս գայլը եւ յառա՛ջ։ Իսկ երբ իջաւ եօթնից օրհնուած գի-չերը—ցնծա՛, դու արդէն յաղթել ես։ Դու չես կարող չյաղթել, որովհետև կռիւը տար-ւում է քո նւիրական հողի վրայ, քո երկրի սահմաններում, ուր ամէն ինչ քեզ հետ է, ուր ամէն ոք և ամէն ինչ կանչում են՝ «քեզ հե՛տ ենք, յառա՛ջ»։

—

Վերջապէս, նա ընկերն է իր զինւորի։ Զօրքը եթէ ոչ առաջին, ամենաուշը երկրորդ օրը բնազդաբար ճանաչում է իր առաջնորդ-ներին։ Նա շատ շուտ է տարբերում «մեծ»ը «փքւած»-ից։ Նա յարգում է գիտակցական կարգապահութիւնը, բայց չի սիրում պաղ և անհոգի պաշտօնականութիւնը։ Նա ուզում է, որ իր առաջնորդը լինի աւելի սրտի մարդ և ամենագլխաւորը, նաև զինւոր։ Եւ այդ-պիսին է կատարեալ առաջնորդը, նրան պաշ-տում են, բայց չեն վախենում նրանից և չը պիտի վախենան։

Անբարոյացուցիչ է վախը։ Կեղծ է այն ամէնը, որ հիմնուած է վախի վրայ—կրօն, բարոյականութիւն, կարգապահութիւն ևն.։ Նա «ներքին պահակն» է իր բանակի. Նրա կենդանի խիղճը՝ միշտ արթուն և հսկող։

Երեւաց նա և ահա բոլորը թափւեցին նրա

չուրջը—և այլևս ոչ ոք է յոգնած, սոված, դառնացած։ Կառավարելու մի հատուկ միջոց ունի նա՝ խօսքը, խիստ, բայց ընկերական, խօսքը՝ երբեմն որպէս սանձ և միշտ էլ որպէս խթան։ Նա կառավարում է անձամբ. արհամարհելով ճանապարհը մատով ցոյց տուող ղեկավարներին։ Ներշնչուած պատմութիւնից, նա իր զինուորներին և ղեկավար տարրերին փոխանցում է իր ապրումներն ու գաղափարները։ Խիստ է, բայց ոչ կոպիտ։ Հպարտ է, բայց ոչ փառասէր։ Պարզ է, չարքաշ, անշահասէր։ Հաննիբալին յաղթող Հռոմի կոնսուլներէն յանիրաւի աքսորուած Սքիպիոնը չէ նա, որը մեռնելով աղքատութեան մէջ, կըտակում է գրել իր գերեզմանաքարին վրայ՝ «ապերա՛խտ հայրենիք, դու տէր չպիտի լինես իմ ոսկորներին»։

Նա Հելլադայի մեծ ռազմավարներէն Ֆոկիոնն է, որը յանիրաւի մահուան դատապարտուած, թոյնը խմելուց առաջ ասում է որդուն. «յանձնարարում եմ քեզ ծառայել հայրենիքիդ սրտանց և հաւատարմօրէն և ամենագլխաւորը՝ մոռանալ, որ իմ ծառայութեան համար նա ինձ վարձատրեց մահուամբ»։

Այսպէս է կատարեալ ղեկավարը. Նա միաժամանակ և՛ դաստիարակն է, և՛ ռազմարուեստագէտը, և՛ կախարդը, և՛ ընկերը,—Նա Աստուածն է իր բանակին։

XI

## ԲԱՐՈՅԱՇՈՒՆՉ ՄԹՆՈԼՈՐՏ

Ազգերին, որպէս իրենց
ստուերը, հետեւում է ի-
րենց արժանի բախտը.

*Իր ճակատագրի դարբինն է ամեն մի ժողովուրդ. Վաղ թէ ուշ նա դառնում է այն, ինչ որ ուզում է լինել այսօր.*

*Այսօրուայ նրա իդէալը—դա միաժամանակ և՛ մարգարէացումն է, և՛ խոստումն այն բանի, ինչ որ վերջ ի վերջոյ պիտի դառնայ նա.*

*Անհատ, խմբակցութիւն, ժողովուրդ,— հոգեբանօրէն այլ բան չեն այդ բոլորը, քան իրենց իդէալի ստեղծագործութիւնը.*

*Մարդկային բոլոր ցեղերը բոլոր ժամանակներում ունեցել են մի որոշ իդէալ —որպէս մի իւրատեսակ ոգի, որը իմաստ և վեհութիւն հաղորդելով նրանց կեանքին՝ փրկել է նրանց բարոյական փտութիւնից.*

—

*Չկայ աւելի զարհուրելի բան, քան ան-*

նպատակ գոյութիւնը։

Յանցանք է դա, մահացու յանցանք։

Նպատակն է թելադրում գերագոյն պարտականութիւններ, նա պահանջում է ճիգեր ու զոհողութիւններ, որոնց մէջ կոփւում են անհատի և ժողովրդի լաւագոյն առաքինութիւնները. —պարտականութիւններ, որոնց կատարումը՝ Ախիլլէսի նիզակի նման՝ բուժում է իր հասցրած վէրքերը։

Նպատակն է բարոյապէս շարժում անհատներն ու ժողովուրդները. Նա փրկում է մահացու ճահճացումից և բարոյական անկումից. Անհատի և ազգի գոյութեան արևն է նպատակը։ Նա լուսաւորում է և ջերմացնում մեր անցնելիք ճանապարհը։ Նա համախմբում է մեր ուժերը, լարում մեր կամքերը և անդիմադրելիօրէն քաշում մեզ դէպ իրեն՝ դէպ յաղթանակ։

Դժուարին, բայց թագաւորական է իդէալի ճանապարհը. Նրա ծայրին՝ դէպ իդէալը հեւիհեւ առաջացող ժողովուրդին թագն է սպասում. Նրա ճանապարհով անցնողը դառնում է թագաւոր-ժողովուրդ.

—

Գերագոյն նպատակ ունի և մեր ժողովուրդը՝ միացեալ և անկախ հայրենիք։

Բայց շնորհիւ տիրող հասկացողութիւննե-

րի, տեսակէտների, ձգտումների քաոսի և սրա առաջացրած առօրէական աննպաստ հոգեբանութեան, նրա մի մասի մէջ սկսել է գունատուել այդ նպատակը։ Նրա մէջ թուլանալ է սկսել ձգտումը դէպի նպատակը։ Եւ նա, որ գոյութեան կռւում չկորչելու համար հրամայողաբար պիտի լինէր անխորտակելի ժայռ, իր աննպատակ գոյութեամբ պիտի դառնայ փոշէ բլուր։

—

Խոզերն ու նիւթապաշտները չեն սիրում կտրել իրենց հայեացքը ցեխից։

Մենք—որ նիւթակրօն խոզութեան մէջ անհատի և ժողովրդի բարոյական անձնասպանութիւն ենք տեսնում,— աւելի յաճախ նայենք վերեւ և հեռուն։

Մարքսից գերադասենք Կարլէյլը, Հեգելից՝ Էմիրսընը։

Լինե՛նք իդէալիստ։

Նիւթապաշտութեան աղջեից ընթանում է զզուելի Փիլիստրականութիւնը. իսկ այդ վերջինը նա խապատրաստում է բարոյական անկումը անհատի, ազգի։

—

Փրկար ար դեր պիտի կատարէին մեր թերթերն ու գրողները, եթէ իրենց ընթերցողներին յաճախ հնարաւորութիւն ընձեռէին, մոռացութեան տալու անփառունակ և տխուր

ներկան և ապրելու անցեալի փառքերով ու ապագայի յոյսերով։

Հոգեպէս մանրանում եւ ճահճանում են միայն ներկայով կլանւած հասարակութիւնները։ Կէս կեանքով են ապրում այն ժողովուրդները, որոնք—հեռու անցեալի և ապագայի ազդեցութիւններից—իրենց կեանքին չեն խառնում իրենց անցեալի փառքերն ու ապագայի յոյսերը։ Այդպիսիները վտանգում են իրենց ապագան, փորում իրենց սեփական գերեզմանը։

—

Կայ բարոյական մթնոլորտը, ուր, ինչպէս և մեզ շրջապատող մթնոլորտում, տեղի են ունենում մակընթացութիւններ ու տեղատւութիւններ մտքերի, գաղափարների, զգացումների, որոնք շնչում է մարդս, իւրացնում եւ փոխանցում իր նմաններին։

Վսեմ ու ազնիւ գաղափարներով լցնենք այդ մթնոլորտը,—գաղափարներ, որոնք սրբէին, մաքրէին մեր կեանքը, որի և առաքինի դարձնէին մեզ, մեծ և փառայեղ գործերի մղէին մեզ։

Գաղափարներ,—որոնք հակաթոյն լինէին բոլոր տեսակի անբարոյացուցիչ և քայքայեցուցիչ ազդեցութիւնների դէմ։

Գաղափարներ,—որոնք փրկել ու փրկում են անհատներն ու ժողովուրդները բարոյական նեխութիւնից։

# XII

## ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ

«Տուէք ինձ դաստիարա-
կութիւնը եւ ես փոխեմ
եւրոպացի դէմքը»։
ԼԱՅԲՆԻՑ

*«Դաստիարակութիւնը կարող է մեզ տալ անհրաժեշտ յատկութիւններն այն ազգերի, որոնք չեն ուզում մեռնել»։*

*Այո՛, դաստիարակութիւնը, բայց ոչ այն՝ որն այսօր տրւում է մեր մատաղ սերունդին։*

*Ամեն ինչից մի քիչ, առանց որեւէ գերիշխող գաղափարի։*

*Մի քիչ հայերէն, մի քիչ տեղական լեզու եւ սովորական առարկաներ — այդ է գաղութային դպրոցի տւածը։*

*Կուսակցամիջեան անվերջ պայքար եւ ժխտական քննադատութիւն — ահա՛ մեր մամուլի դաստիարակչական գործը։*

*Անհատապաշտական ճռուողիւններ — սրանից, կարծեմ, աւելի բան չէ մեր օրւայ գրականութիւնը։*

Չկայ, պակասում է բոլորին — դպրոցի մամուլին, գրողին այն աստուածաշունչ ըղձացումը, որն իր մէջ խտացնում է մարդկային բոլոր բարձր յատկութիւնները։

Չկայ բարձր հայրենասիրութիւնը՝ հայրենապաշտութիւնը չկայ...

—

Հայրենապաշտական դաստիարակութիւն, — ահա մեր փրկութեան խարիսխը։

Ահա՛ թէ ինչու հայրենասիրութեան, չէ՛ հայրենապաշտութեան — մարդկային առաքինութիւնների այդ աստուածային մօր համար պէտք է գահ բարձրացնել մեր հոգիների մէջ, մեր դպրոցներում, մեր ընտանեկան յարկի տակ, մեր գաղթականական վրանների տակ, ամեն տեղ, ուր կ'ապրի, կը շնչէ հայ մարդը։

Ահա՛ թէ ինչու պէտք է երես դարձնել այն բոլոր վարդապետութիւններից, որոնք հաշտ չեն հայրենասիրութեան հետ։

Եւ ահա՛ թէ ինչու պէտք է կեղծ ու մոլար յայտարարել բոլոր կրօնները, բարոյականները, սկզբունքները, որոնք չեն դարբնում կուռ կամքեր, ուժեղ նկարագիրներ, արիներ, որոնց չգոյութիւնը ազգերին յաճախ է ստիպում դիմելու իրենց թշնամիների մեծահոգութեան,

—

«Այն օրը,—մի տեղ ասում է պատմաբան Միշելէն,—երբ Ֆրանսան կը հաւաքի իր որդիներին իր շուրջը և նրանց կը դասաւանդէ Ֆրանսան որպէս դաւանութիւն և կրօն, այն օր վերստին նա իրեն կը զգայ կենսունակ եւ հաստատ, ինչպէս երկրագունդը»։

Այո՛, հայրենիքը—ընդհանուր աստուածութիւն, հայրենասիրութիւնը—կրօն։

Հայրենասիրութիւնը—միայն ոչ որպէս գեղեցիկ խօսք, այլ զգացում և գիտակցութիւն, ոչ որպէս չրթունքի սէր, կամ իդէազուրկ խուժանավարի բարոյական մերկութիւնը ծածկող գեղեցիկ պատմուճան, այլ պաշտամունք, կրօն։

Միայն այսպէս, միայն այսպիսով մեր ժողովուրդը կարող կը լինի հեգնել ժամանակն ու իր վտանգները։

—

Բարոյական մեծութիւններով և փառքի գործերով հարուստ է մեր պատմութիւնը։

Նա ունի փառայեղ էջեր՝ մեր Ոսկեդարը։

Եղիշէի և իր անմահ ժամանակակիցների դարը հերիք պիտ լինէր—եթէ գունատուած չլինէր մեր յիշողութեան մէջ—մեր ժողովրդի սրտի մէջ վառ պահելու հայրենասիրութեան բոցը։

Աւարայրը կը մնայ մարդկային պատմութեան ամենավեհափառ գործերից մէկը։

Իր յաղթական նահատակների աստուածային խիզախումներով ու դիւցազնական խոյանքներով նա աւելի վեհ՛ է ու գեղեցիկ, քան մեր դարի ամենամեծ ճակատամարտները։

—

Անմահ էջեր ունի և մեր նորագոյն պատմութիւնը։

Նոր և հերոսական Աւարայրներ չա՜տ եւ անմահ մեռելների մի ամբողջ պլէադա,—նահատակներ, մեծ իրենց գործերով, հրահանգիչ իրենց բարձր նկարագրով․

Կա՜յ, կայ այդ բոլորը․ կա՜յ այն, որն իրաւունք է տալիս մարդկային մի զանգուածի ազգ կոչուելու։

Բայց, չկայ,—աւա՜ղ—այդ բոլորի պաշտամունքը մեր հաւաքական հոգու մէջ։

Եւ միայն հայրենապաշտական դաստիարակութիւնն է որ ուժեղ և անմեռ պիտի դարձնէ մեր ժողովուրդը։

«Ցեղի հոգին միակ ուժն է, որի առաջ անզօր են բոլոր ուժերը։

Դաստիարակենք մեր սերունդները հայրենապաշտօրէն ու ցեղօրէն՝ արևի տակ մեր տեղը չկորցնելու համար։

—

Այն չպիտի լինի մեր դպրոցը, ինչ որ է այսօր։

Շեշտուած նպատակը, ջերմութիւնը, հոգին է պակասում մեր արդի դպրոցին.

Նա չէ, բայց պիտի լինի հայրենագիտութեան և հայրենասիրութեան ամբիոն, տաճար։

Դեռ այնտեղ հայ մանուկը պիտ ճանաչի և սովորէ սիրել հայրենի ժողովուրդն ու երկիրը։

Նա է որ հայ մանուկի հոգու մէջ պիտ քամի մեր պատմութեան բովանդակ գեղեցկութիւնն ու վեհութիւնը.

—

Բաւական չեն մութ և չփոթ տեղեկութիւնները հայրենի երկրի և ժողովրդի մասին.

Անպէտք են այն դասագրքերը, ցամաք և անհոգի, որոնց մէջ հայրենիքի մասին խօսւում է ճիշտ այնպէս, ինչպէս նկարագրւում է Սահարայի անապատը կամ մի հեռաւոր կղզի։

Կրօնական երկիւղածութեամբ և անսահման քաղցրութեամբ պիտ դասաւանդւի հայրենագիտութիւնը.

Սրտի և մտքի կրակով պիտ խօսւի հայրենի երկրի մասին՝ հրահրելով վերջինի պաշտամունքը մանկական հոգիների մէջ։

Փաստերի հետ և խորհրդածութիւններ, որոնք հարստացնելով յիշողութիւնը, բեղմնա-

ուրէին նաև միտքը, ջերմացնէին նաև սրտերը։

—

«Կը գայ ժամանակ,—ասում է մեր դարի իմաստասէրներից մէկը,—որ ամեն բանից առաջ կը մտածեն դաստիարակութեան մասին»։

Մի մեծ քայլ առնենք դէպի այդ ժամանակը։

Ընդունենք, որ նա եկել է—այո՛, նա եկել է արդէն մեզ համար—և ամեն բանից առաջ մտածենք հայրենապաշտական փրկարար դաստիարակութեան մասին.

Նման դաստիարակութեամբ պատրաստենք մեր ապահով ապագան։

Եւ չմոռանանք որ դպրոցն ու մամուլը փաստերից աւելի բարձր գաղափարներ պիտի տան։

Չմոռանանք, որ նիւթապաշտութիւնը թոյն է մեզ նման փոքր ժողովրդի համար։

Ասենք և մի այլ ճշմարտութիւն—ով հայրենապաշտ ու իդէալիստ երիտասարդութիւն ունի, նա էլ ապագայ ունի։

Փրկութիւնը սրա մէջ է կամ և ոչ մի բանի, չմոռանանք և այդ։

Սօֆիա, 1924, Մայիս

(ՎԵՐՋ)

## ՄԱՏԵՆԱՇԱՐ "ՅՈՒՍԱԲԵՐ,,

### ԼՈՅՍ ՏԵՍԱԾ ԵՆ

1.— ԼՈՒԱԾ ՋՐԱՂԱՑԸ Հ. Զուտէրման 2 Շիլին (թարգմ. Գ. Մխիթարեանի)

2.— ԻՆՉ ՉԷՐ ԵՒ ԻՆՉ ՊԻՏԻ ԼԻՆԻ ՄԵՐ ՈՒՂԻՆ Վ. Նաւասարդեան 1 Շիլին

3.— ՀԱՅ-ԹՐՔԱԿԱՆ ԿՆՃԻՌԸ Ռուբէն . . . . 6 Ս. Դ.

4.— Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԱՆԵԼԻՔԸ Վ. Նաւասարդեան 8 Ս. Դ.

5.— ԵՐԿՈՒ ԱՄԻՍ ԲՈԼՇԵՎԻԿԵԱՆ ԲԱՆՏՈՒՄ Բախշի Իշխանեան 10 Ս. Դ.

6.— ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ «ԼԻԿՈՒԻԴԱՑԻԱՆ» (բոլշեւիկի նենգութեան առիթով) Վ. Նաւասարդեան 7 Ս. Դ.

7.— ԷՋԵՐ ԻՄ ՕՐԱԳՐԷՆ Գ. Նժդեհ, 5 Ս. Դ.

5.— ԵՐԿՈՒ ԱՄԻՍ ԲՈԼՇԵՎԻԿԵԱՆ ԲԱՆՏՈՒՄ

Բախշի Իշխանեան 10 Ե. Դ.

6.— ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ «ԼԻԿՈՒԻԴԱՑԻԱՆ»

(բոլշեւիզմի սնանկութեան առիթով)

Վ. Նաւասարդեան 7 Ե. Դ.

7.— ԷՋԵՐ ԻՄ ՕՐԱԳՐԷՆ Գ. Նժդեհ, 5 Ե. Դ.

**Մ Ա Մ Լ Ո Յ Տ Ա Կ Է**

ԸՆԿԵՐՎԱՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԴԵՄՈԿՐԱՏԻԶՄԸ

Վ. Նաւասարդեան

---

ԳԻՆ 5 Ե. Դ.

---